Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



№ 24 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1951

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78

# ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԱՏԱՐԱՆՆԵՐԻ (ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԵՎ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԱՏԵՆԱԿԱԼՆԵՐԻ) ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

1951 թվականի դեկտեմբերի 16-ին տեղի ունեցան Հայկական ՍՍՌ ժողովրդական դատարանների ընտրությունները:

Աշխատավորների դեպուտատների շրջանային և քաղաքային Սովետների գործադիր կոմիտեներից Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահությունում ստացված քվեարկության արձանագրությունների հիման վրա պարզվել է, որ Հայկական ՍՍՌ ժողովրդական դատարանների (ժողովրդական դատավորների և ժողովրդական ատենակալների) ընտրություններում քվեարկությանը մասնակցել է բոլոր ընտրողների 99,99 տոկոսը:

Ժողովրդական դատավորների թեկնածուների օգտին տրված ձայների թիվը կազմում է քվեարկությանը մասնակցած ընտրողնե-







րի ընդհանուր թվի 99,77 տոկոսը, ժողովրդական ատենակալների թեկնածուների օգտին՝ 99,99 տոկոսը:

Ընտրությունները տեղի են ունեցել բոլոր ընտրական օկրուգներում:

Ընտրված բոլոր ժողովրդական դատավորները և ժողովրդական ատենակալները կոմունիստների և անպարտիականների բլոկի թեկնածուներ են:

Ընտրված ժողովրդական դատավորների և ժողովրդական ատենակալների թվում կանայք կազմում են 41,3 տոկոսը, ՀամԿ(բ)Պ անդամները և թեկնածուները՝ 54,6 տոկոսը, անպարտիականները՝ 45,4 տոկոսը:

Ընտրությունները անցան աշխատավորների քաղաքական մեծ ակտիվության պայմաններում:



# ԻՆՉ ՏՎԵՑ ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻՆ 1951 ԹՎԱԿԱՆԸ

## (ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ)

*Մեր երկրի համար 1951 թվականը հանդիսացավ սոցիալիստական էկոնոմիկայի, գիտության, արվեստի, կուլտուրայի, ինչպես նաև ժողովրդի նյութական կյանքի պայմանների հետագա վերելքի տարի։ Բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը, հաջողությամբ շարունակելով խաղաղ շինարարական աշխատանքը, 1951 թվականին նոր, խոշոր քայլ կատարեց կոմունիզմի կառուցման ճանապարհին։*

*Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում տված զեկուցման մեջ ընկ. Բերիան նշեց. «Այս տարվա 10 ամիսների ընթացքում տնտեսական շինարարության ասպարեզում կատարված աշխատանքի արդյունքները ցույց են տալիս, որ 1951 թվականի ժողովրդա-տնտեսական պլանը կկատարվի և կգերակատարվի։ Արդյունաբերական ար-*

*տադրանքը անցած տարվա համեմատու-
թյամբ կավելանա ավելի քան 15 տոկոսով և
երկու անգամ կգերազանցի նախապատե-
րազմյան 1940 թվականի արտադրանքը։
Արդյունաբերության հիմնական արտադրա-
կան ֆոնդերը, 1950 թվականի համեմատու-
թյամբ, կաճեն 12 տոկոսով»։*

*Արտաքին քաղաքականության բնագավա-
ռում Սովետական Միությունը 1951 թվա-
կանի ընթացքում շարունակեց իր անդուլ
պայքարը խաղաղության համար, որն էլ
ավելի բարձրացրեց նրա միջազգային հե-
ղինակությունը, որպես ամբողջ աշխարհում
խաղաղության մեծ պաշտպանի, խաղաղու-
թյան և դեմոկրատիայի լագերի դրոշակա-
կրի։*

❊❊❊

*Սովետական Սոցիալիստական Ռեսպուբ-
լիկաների Մեծ Միության եղբայրական, հա-
մերաշխ ընտանիքում 1951 թվականին նոր,
փայլուն նվաճումներ ձեռք բերեց նաև Հայ-
կական ՍՍՌ-ն։ Ռեսպուբլիկայի ամբողջ ար-
դյունաբերությունը ընթացիկ տարվա 11
ամսվա պլանը կատարեց 105,4 տոկոսով։*

*1951 թվականին ռեսպուբլիկայում գոր-
ծարկվեցին արդյունաբերական մի շարք
նոր ձեռնարկություններ, այդ թվում Երևանի
նուրբ մահուդի կոմբինատը, էլեկտրալամ-*



*պերի, ավտոնորոգման, մետաղյա ամանե-
ղենի, աղյուսի գործարանները, դերմոնտինի
և մոմալաթի ֆաբրիկան, Մոմանյանի հրա-
կայուն աղյուսի, Կիրովականի կղմինդրի և
աղյուսի գործարանները։ Շինարարական
խոշոր աշխատանքներ կատարվեցին Մսեղե-
նի-կաթնեղենի արդյունաբերության մի-
նիստրության գծով։ Շահագործման հանձըն-
վեց Կիրովականի կաթի վերամշակման
գործարանը, որն արտադրում է բազմազան
կաթնամթերքներ՝ խտացրած կաթ, սեր, պա-
նիր և այլն։ Գործող արդյունաբերական
ձեռնարկությունների շարքը մտան յուղի-
կաթի գործարանը Թալինի շրջանի Մաստա-
րա գյուղում, ինչպես նաև Ախուրյանի շըր-
ջանի Մուսայելյան գյուղում, Ազիզբեկովի
շրջանի Միկոյան գյուղում և Ապարանի շըր-
ջանի Շարկալա գյուղում կառուցված յուղի-
պանրի գործարանները։*

*Բացի այդ, ընդարձակվեցին ռեսպուբլի-
կայի մի շարք արդյունաբերական ձեռնար-
կություններ, կառուցվեցին տասնյակ նոր
ցեխեր։*

*Այս տարի ռեսպուբլիկայի արդյունաբե-
րական ձեռնարկությունները առաջընթաց
նոր քայլ կատարեցին արտադրանքի որա-
կական ցուցանիշների բարձրացման ուղղու-
թյամբ, յուրացրին նոր, ավելի կատարելա-*

գործված ու հզոր մեքենաների ու արտադ-
րանքի այլ, բարձրորակ տեսակների թողար-
կումը: Երևանի էլեկտրամեքենաշինական
գործարանը սկսեց թողարկել 100 կիլովա-
տից բարձր կարողություն ունեցող գեներա-
տորներ և տրանսֆորմատորներ, ինչպես
նաև շարժական ենթակայաններ: Կոմպրե-
սորների գործարանը յուրացրեց նոր, ավելի
հզոր կոմպրեսորների թողարկումը: Փոքր
հիդրոտուրբինների գործարանն սկսեց ար-
տադրել նոր հիդրոտուրբիններ և 7 տեսակի
մղիչներ, Լենինականի մեխանիկական գոր-
ծարանը ռեսպուբլիկայի շինարարությանը
սկսեց մատակարարել քարտաշ մեքենաներ:
Արտադրանքի նոր տեսակներ թողարկեցին
Երևանի կաբելի, ավտոդողերի, քիմիական
գործարանները, Բերիայի մետաքսագործված-
քային ֆաբրիկան սկսեց թողարկել ավելի
բարձրորակ գործվածքեղեն, Երևանի կաշվի
գործարանի արտադրանքի ասորտիմենտը
հարստացավ դերմոնտինի թողարկմամբ և
այլն:

1951 թվականի ընթացքում լայն ծավալ
ստացան լեռնահանքային հարստություննե-
րի հետազոտությունները, որոնք նոր հեռա-
նկարներ են բացում մեր ռեսպուբլիկայում
արդյունաբերության այդ կարևորագույն
ճյուղի հետագա զարգացման համար:



Սովետական Հայաստանի աշխատավոր-
ները 1951 թվականի ընթացքում մեծագույն
եռանդով շարունակեցին կատարել կոմու-
նիզմի մեծ կառուցումների պատվերները:
Մեր ռեսպուբլիկայի արդյունաբերությունը
այդ կառուցումներին այս տարի ուղարկեց
տրանսֆորմատորներ, կաբել, ավտոմեքե-
նաների մասեր, զանազան սարքավորում-
ներ, բարձրորակ շինանյութ և այլն: Ռես-
պուբլիկայի աշխատավորությունը ժամկե-
տից շուտ կատարեց կոմունիզմի մեծ կա-
ռուցումների բոլոր պատվերները:

Ռեսպուբլիկայի բազմաթիվ ձեռնարկու-
թյունների կոլեկտիվներ, լայնորեն ծավալե-
լով սոցիալիստական մրցությունը, կիրառե-
լով ստախանովյան աշխատանքի նոր մե-
թոդներ, տարեկան պլանը կատարեցին ժամ-
կետից շուտ: Իրենց տարեկան պլանները
ժամկետից ավելի քան մեկ ամիս շուտ կա-
տարեցին Ալավերդու պղնձաձուլական կոմ-
բինատը, Հայկոոպերտրեստը, Հայկական
ՍՍՌ Տեղական արդյունաբերության և Սննդի
արդյունաբերության մինիստրությունների
արտադրական ձեռնարկությունների կոլեկ-
տիվները, Երևանի կաշվի, էլեկտրամեխա-
նիկական, ծխախոտի ֆերմենտացիոն գոր-
ծարանները, Բերիայի շրջանի Շահումյանի
անվան մետաքսագործվածքային ֆաբրիկան,

Ալավերդու շրջանի Թումանյանի հանքվարչությունը, մի շարք այլ ձեռնարկություններ և արհեստագործական կոոպերացիայի միավորներ։

***

1951 թվականը մեր ռեսպուբլիկայի համար նոր վերելքի տարի հանդիսացավ նաև գյուղատնտեսության բնագավառում։ Այս տարի առաջին անգամ Հայաստանի կոլտնտեսություններն աշնանացան և գարնանացան ցորենի ցանքերը մասսայաբար պարարտացրին հանքային պարարտանյութերով, որը բարձրացրեց ցանքերի բերքատվությունը։ Հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունը նոր հողերի յուրացման հաշվին ընդարձակվեց մոտ 40 հազար հեկտարով, Այսպիսով. ապահովվեց Հայկական ՍՍՌ-ում ցորենի արտադրությունն ավելացնելու մասին Միութենական Կառավարության կողմից 1951 թվականի համար տրված առաջադրանքի գերակատարումը։ Զգալիորեն ուժեղացավ ՄՏԿ-ների պարկը։

Հացահատիկային կուլտուրաների միջին բերքատվությունն այս տարի զգալիորեն աճեց։ Այս տարի աճեցվել է նաև ծխախոտի, շաքարի ճակնդեղի, կարտոֆիլի, խորդենու և բանջարա-բոստանային կուլտուրաների բարձր բերք։



Ռեսպուբլիկայի կոլտնտեսային գյուղացիությունը պատվով կատարեց իր պարտավորությունները հարազատ պետության հանդեպ։ Հացահատիկի հանձնման պլանը կատարվեց սահմանված ժամկետից 30 օր շուտ, պետությանը հանձնվեց 1 միլիոն 441 հազար փութ հացահատիկ ավելի, քան հանձնվել էր ամբողջ 1950 թվականի ընթացքում։ Ժամկետից շուտ կատարվեց նաև պետությանը խաղող, պտուղ, խորդենի, շերամի բոժոժ հանձնելու պլանը։

Կատարվում է ռեսպուբլիկայի անասնապահության զարգացման եռամյա պլանը։ Ընթացիկ տարում յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստացված է մոտ 50 տոկոսով ավելի կաթ, քան անցյալ տարի։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության հետագա հզոր վերելքն ապահովելու համար այս տարի ուժեղ թափով շարունակվեցին Թալինի, Նորքի, Ներքին Զանգվի երկրորդ հերթի ջրանցքների շինարարական աշխատանքները, Արարատյան դաշտավայրի և Արազդայանի տափաստանի ճահճային հողերի չորացումն ու յուրացումը և իրրիգացիոն այլ աշխատանքներ։

***

1951 թվականին նոր ծաղկման հասավ Սովետական Հայաստանի ձևով ազգային,

կուլ-
բովանդակությամբ սոցիալիստական կուլ-
տուրան։ Ժողովրդական կրթության բնագա-
վառի աշխատողները լուրջ աշխատանք կա-
տարեցին գյուղում պարտադիր յոթնամյա
կրթություն, իսկ քաղաքում միջնակարգ
կրթություն կենսագործելու ուղղությամբ։
Կառուցվեցին մի շարք նոր դպրոցներ, այդ
թվում Երևանում, Լենինականում, Կալինի-
նոյի շրջանի Պրիվոլնոյե գյուղում, Թումանյանի
յանի հանքվարչությունում և այլն։ Դպրո-
ցական նոր շենքերի շինարարություններ
սկսվեցին ռեսպուբլիկայի մի շարք ուրիշ
վայրերում։ 1951 թվականի ընթացքում գյու-
ղական ուսուցիչների շարքերը լրացրին
հարյուրավոր նոր, բարձրագույն մանկա-
վարժական կրթություն ստացած կադրեր։
Սովետական Հայաստանի աշխատավորա-
կան լայն մասսաների կուլտուրական հզոր
վերելքի մասին են վկայում նաև հետևյալ
թվերը։ Եթե 1921 թվականին մեր ռեսպուբ-
լիկայում լույս է ընծայվել 10 անուն գիրք՝
21.600 տիրաժով, ապա այս տարվա 11
ամիսների ընթացքում լույս ընծայվեց 813
անուն գիրք՝ 4 միլիոն 814 հազար ընդհա-
նուր տիրաժով։ Այս տարի շարունակվեց
Վ. Ի. Լենինի և Ի. Վ. Ստալինի Երկերի ժո-
ղովածուների հրատարակությունը, բացի
այդ, լույս տեսան մարքսիզմ-լենինիզմի



կլասիկների 12 անուն աշխատություններ,
դպրոցականներն ստացան 84 անուն դասա-
գիրք, մանուկների համար հրատարակվեց
41 անուն գիրք և այլն։

Ռեսպուբլիկայի թատրոնների ռեպերտուա-
րը հարստացավ նոր, գեղարվեստական
բարձր արժեք ունեցող բեմադրություննե-
րով։ Շոշափելի աշխատանք կատարվեց
օպերայի նոր բեմադրությունների ուղղու-
թյամբ։ Բեմադրվեցին «Դուբրովսկի», «Կա-
րինե» օպերաները, «Կարմիր կակաչ» բալե-
տը։

Այս տարի Հայաստանի գիտնականները
կատարել են մի շարք աշխատանքներ, ո-
րոնք լուրջ նշանակություն ունեն ժողովրդա-
կան տնտեսության համար։ Հայկական ՍՍՌ
Գիտությունների ակադեմիայի իսկական ան-
դամ Ի. Եղիազարյանի ղեկավարությամբ հա-
ջողությամբ անց են կացվում Կուրբիշևյան
հիդրոհանգույցի մեծ մոդելի փորձարկման
հետազոտությունները։ Ակադեմիայի Երկրա-
բանության ինստիտուտի և Շինանյութերի ու
կառուցվածքների ինստիտուտի կոմպլեքսա-
յին արշավախմբի ջոկատներն ուսումնասի-
րել են նստվածքային երևույթները Վոլգայի
աջ ափին, իսկ Ստալինգրադյան հիդրո-
հանգույցի ջրամբարի կառուցման գոտում

հետազոտել և ուսումնասիրել են շինանյու-
թերի հանքավայրերը։
Կոմունիստական պարտիայի, Սովետա-
կան Կառավարության և անձամբ ընկեր
Ստալինի ամենօրյա հոգատարության շնոր-
հիվ օրըստօրե բարելավվում են Սովետական
Հայաստանի աշխատավորության կյանքի
պայմանները։ 1951 թվականի ընթացքում
էլ ավելի ծաղկեցին ու բարգավաճեցին
մեր ռեսպուբլիկայի քաղաքներն ու գյուղե-
րը, կառուցվեցին տասնյակ հարյուրավոր
նոր բնակելի շենքեր, բացվեցին նոր փողոց-
ներ, զբոսավայրեր։ Ընթացիկ տարում Հայ-
կական ՍՍՌ-ում բնակարանային շինարա-
րության համար հատկացված կապիտալ
ներդրումների գումարը, անցյալ տարվա
համեմատությամբ, ավելացել է 67 տոկո-
սով։ Պետությունը խոշոր միջոցներ հատ-
կացրեց քաղաքների և շրջանային կենտրոն-
ների բարեկարգման համար։

Հայ ժողովրդի ազատագրության 31-րդ
տարեդարձը Երևանի աշխատավորները նը-
շեցին քաղաքի երկրորդ ջրմուղի գործարկու-
մով, որ մի նոր, խոշոր նվաճում է քաղա-
քային տնտեսության զարգացման գործում։
Նոր ջրմուղի շահագործմամբ Երևանի բնակ-
չության յուրաքանչյուր շնչին օրական տըր-



վող ջրի քանակը կհասնի մոտ 200 լիտրի։
Երևանի աշխատավորությունն այսուհետև
լիակատար կերպով ապահոված կլինի
սառնորակ աղբյուրներից հոսող բարձրորակ
խմելու ջրով։

Ջրմուղի ցանցն ընդարձակվեց նաև Կի-
րովականում, Կրասնոսելսկում, Գորիսում,
Կոտայքում և Կալինինոյում։

Ինչպես ամեն տարի, 1951 թվականին ևս
մեր պետությունը խոշոր միջոցներ հատ-
կացրեց Սովետական Հայաստանի աշխա-
տավորության առողջապահության գործին։
Այս տարվա ընթացքում շարունակվեց բուժ-
հիմնարկների, մանկամսուրների և կոնսուլ-
տացիաների ցանցի ընդարձակումը, նոր հի-
վանդանոցներ բացվեցին Դիլիջանում, Գյու-
մուշգէսի կառուցողների համար։ Ռեսպուբ-
լիկայի շրջանները մշտական աշխատանքի
գործուղվեցին հատուկ մասնագիտություն
ունեցող ավելի քան 140 բժիշկ։ Լայն աշ-
խատանքներ ծավալվեցին Հայաստանի կու-
րորտները բարեկարգելու և ընդարձակելու
ուղղությամբ։

1951 թվականի ընթացքում ռեսպուբլիկա-
յի աշխատավորներից սանատորիաներում
բուժվել և հանգստացել է մոտ 5.900 մարդ,
իսկ հանգստյան տներում իրենց արձակուր-

դըն են անցկացրել ավելի քան 5.500 մարդ-
Միայն Երևանի 18 հազար դպրոցականներ
ամառվա ընթացքում հանգստացել և կազ-
դուրվել են պիոներական ճամբարներում։

***

Մեր ռեսպուբլիկայի կյանքում 1951 թվա-
կանի ընթացքում խոշոր իրադարձություն
հանդիսացավ ՀԿ(բ)Պ 15-րդ համագումա-
րը։ Ռեսպուբլիկայի աշխատավորները ՀԿ(բ)Պ
15-րդ համագումարը դիմավորեցին սո-
ցիալիստական շինարարության բոլոր բը-
նագավառներում ձեռք բերած նոր, զգալի
հաջողություններով։ Համագումարը հանրա-
գումարի բերեց ՀԿ(բ)Պ 14-րդ համագումա-
րից հետո անցած ժամանակաշրջանում ռես-
պուբլիկայի պարտիական կազմակերպու-
թյունների կատարած աշխատանքը՝ տնտե-
սության, կուլտուրայի, գիտության, արվես-
տի և գրականության բնագավառներում և
մշակեց հետագա գործունեության ծրագի-
րը։

Ռեսպուբլիկայի աշխատավորների համար
1951 թվականին քաղաքական խոշոր իրա-
դարձություն հանդիսացան դեկտեմբերի
16-ին տեղի ունեցած Հայկական ՍՍՌ ժո-
ղովրդական դատարանների ընտրություննե-
րը։ Ռեսպուբլիկայի աշխատավորները միա-



համուռ կերպով սովետական արդարադատու-
թյան ամենամասսայական օրգաններում՝
ժողովրդական դատարաններում ընտրեցին
երկրի լավագույն մարդկանց։

Կայուն խաղաղության համար մղվող պայ-
քարում իր ակտիվ մասնակցությունն է ցու-
ցաբերում նաև Սովետական Հայաստանի
աշխատավորությունը։ Ռեսպուբլիկայի ավե-
լի քան 900 հազար քաղաքացիներ իրենց
ստորագրությունները դրին Խաղաղության
Պակտ կնքելու վերաբերյալ Խաղաղության
Համաշխարհային Խորհրդի Դիմումի տակ։
Այդ ստորագրությունները օրըստօրե ամրա-
պնդվում են գործարաններում ու ֆաբրիկա-
ներում, կոլտնտեսային դաշտերում, նորա-
կառույցներում, երկաթուղային տրանսպոր-
տում, գիտական հաստատություններում մեր
մարդկանց կատարած անդուլ աշխատանքով։

Բոլշևիկների հարազատ պարտիայի ղե-
կավարությամբ, Մեծ Ստալինի առաջնորդու-
թյամբ, Սովետական Միության բոլոր ժո-
ղովուրդների հետ միասին նորանոր, փայ-
լուն հաջողություններով ավարտելով 1951
թվականը, հայ ժողովուրդը վստահորեն ոտք
է դնում 1952 թականի շեմքին, լի վճռակա-
նությամբ նոր հաջողությունների հասնելու
համար։

# ԻՆՉՊԵՍ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏԵԼ ԶՐՈՒՅՑՆԵՐԸ

Ագիտատորը զրույցների նախապատրաստությունը պետք է սկսի թեմաների ընտրությամբ, նախօրոք հաշվի առնելով իր ունկընդիրների պահանջները, նրանց հուզող, հետաքրքրող հարցերի տարբեր բնագավառները։ Զրույցի նախապատրաստումը պետք է ելնի այն իրողությունից, որ ամեն մի ունկնդիր ապրում է մեր Մեծ Հայրենիքի հետ ընդհանուր կյանքով, նրան հետաքրքրում են Սովետական Միության մեջ կատարվող աշխատանքային վերելքի հարցերը, մեր երկրի զարգացման հեռանկարները, միջազգային իրադարձությունները, ինչպես նաև իրենց ձեռնարկության, հիմնարկության, կոլտնտեսության կամ սովխոզի կոլեկտիվների առջև դրված խնդիրները։

Ունկնդիրներին հետաքրքրող հարցերի լայն շրջանը ընդգրկելու համար, ագիտատորի աշխատանքի հիմնական ուղղությունը որոշվում է Սովետական երկրի առջև կանգնած քաղաքական և տնտեսական խնդիրներով։ Դրան-



ցից ելնելով հաջորդաբար զրույցներ պետք է նվիրել առաջին հերթին պարտիայի ու կառավարության որոշումներին, ինչպես նաև պարտիայի ու կառավարության ղեկավարների ելույթներին ու զեկուցումներին։

Ագիտատորի աշխատանքում զգալի տեղ պետք է գրավեն մեր երկրի ներքին, ինչպես նաև միջազգային կյանքին վերաբերող թեմաներով զրույցներ կազմակերպելը։ Առանձին զրույցների նյութ կարող են ծառայել, օրինակ՝ ժողովրդական տնտեսության եռամյա, տարեկան պլանների կատարման մասին պաշտոնական հաղորդագրությունները, մեր Միության առաջավոր ձեռնարկությունների կոլեկտիվների նախաձեռնությունները, արդյունաբերության, գյուղատնտեսության առաջավորների առաջարկությունները՝ սոցիալիստական մրցություն կազմակերպելու մասին, ինչպես նաև ձեռնարկությունների կոլեկտիվների ունեցած նվաճումները և այլն։ Ունկնդիրները ուշադրությամբ կլսեն խաղաղության համար Սովետական Միության կողմից գլխավորվող աշխարհի ժողովուրդների պայքարի յուրաքանչյուր փաստի մասին, ժողովրդական դեմոկրատիայի երկրների տնտեսական, քաղաքական նվաճումների, իմպերիալիզմի լծի տակ հեծող

ազգերի ազատության ու անկախության համար նրանց պայքարի մասին: Նրանք կցանկանան տեղյակ լինել իմպերիալիստական պետությունների, այդ թվում Ամերիկայի, Անգլիայի կառավարողների կողմից ժողովուրդների դեմ գործած ոտնձգության ամեն մի փաստի հետ:

Որոշակի ժամանակի համար զրույցների թեմաներ նշելիս ագիտատորը անպայման պետք է հաշվի առնի ունկնդիրների կողմից իրեն տրված հարցերը: Շատ հաճախ ունկնդիրների տված հարցերը լրացնում են ագիտատորի կողմից նշված թեմաների պակասը և առիթ տալիս մի շարք հետաքրքիր և կարևոր զրույցների կազմակերպման:

Թեմաների ընտրությունից հետո, ագիտատորը խնամքով պետք է նախապատրաստվի զրույցին: Նախապատրաստվելը անհրաժեշտ է բոլոր ագիտատորների համար, որքան էլ նրանք գրագետ, պատրաստված լինեն: Զրույցին նախապատրաստվելը անհրաժեշտ է նույնիսկ այն դեպքում, երբ զրույցի թեման քննարկվել է ագիտկոլեկտիվում: Չի կարելի բավարարվել ագիտկոլեկտիվի ցուցումներով, հարկավոր է անձամբ աշխատել թեմայի վրա, ընտրել կոնկրետ նյութեր, նախօրոք հաշվի



առնել ունկնդիրների շահագրգռվածությունը շոշափվող հարցերի նկատմամբ:

Զրույցի թեմայի ընտրությունից հետո, ագիտատորին մնում է լրջորեն մտածել զրույցի կառուցման, զրույցն անցկացնելու համար պլան կազմելու մասին:

Ագիտատորի կազմած պլանում պետք է ամենից առաջ նպատակահարմար և հետևողականորեն շարադրվեն զրույցի հիմնական բովանդակությունը արտահայտող հարցերը: Հնարավոր է, և դա հաճախ է պատահում, որ զրույցը չի ծավալվում այնպես, ինչպես պլանավորված է, բայց պլանը հնարավորություն կտա ագիտատորին չկտրվելու նախընտրած թեմայից, բաց չթողնելու հիմնական հարցերը, լիովին օգտագործելու քաղաքական, գեղարվեստական գրականությունից, թերթերից, իրենց կոլեկտիվի կյանքից վերցրած մտքերը, մեջբերումները, թվերը և փաստերը:

Պլանը կազմելու ժամանակ թեմայի բովանդակությունը արտահայտող հարցերը հաջորդաբար գրանցելու հետ միասին, խորհուրդ է տրվում այդ հարցերը շարադրել այնպես, որ արտահայտվի, թե ագիտատորը ինչ կերպ է ցանկանում սկսել ու ավարտել զրույցը, նախօրոք ինչպես

հարցադրումները,
է նախապատրաստում
ինչպիսի եղանակներով է ցանկանում բոր-
բոքել ունկնդիրների հետաքրքրությունը, լա-
րել նրանց ուշադրությունը և, որ գլխավորն է,
ապահովել ունկնդիրների ակտիվ մասնակ-
ցությունը թեմայի քննարկմանը։
Թեմաների ընտրությունից և գրույցների
պլանը կազմելուց հետո ագիտատորը պետք
է ըստ այդ թեմաների և պլանի փնտրի և
գտնի հարկավոր գրականությունը, թերթե-
րը, ժուռնալները, վերցնի իրենց կոլեկտի-
վին, ձեռնարկությանը վերաբերող թվերն ու
փաստերը։

Փորձառու ագիտատորների աշխատանքի
ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ լավ
կլինի, եթե ագիտատորը սիստեմատիկաբար
կուտակի գրույցների համար անհրաժեշտ
նյութեր, այլապես թեմաների ընտրությունից
ու պլանը կազմելուց հետո նրա համար շա-
փազանց դժվար կլինի գտնել իրեն հարկա-
վոր գրքերը, թերթերն ու ժուռնալները։ Բացի
այդ, մեծ աշխատանք կպահանջվի անհրա-
ժեշտ նյութերը ջոկել ու արտագրել։ Այդ
դժվարություններին չհանդիպելու համար
խորհուրդ է տրվում նյութեր հավաքել շարու-
նակաբար։ Մեր մի շարք ագիտատորներ
այդ գործում ուսանելի փորձ ունեն. Նրանք



պահում են առանձին գրանցումների տետր։
Այդ տետրում նրանք առանձնացնում են ի-
րենց կարդացած գրքերից առանձին մտք-
քեր, մեջբերումներ, թվեր ու փաստեր, հա-
վատացած լինելով, որ դրանք ունկնդիրների
համար հետաքրքիր կլինեն, կամ անհրաժեշտ
կլինեն այս կամ այն բնագավառի հարցերը
լուսաբանելու և հիմնավորելու համար։ Բա-
ցի գրանցման տետրից, անհրաժեշտ է ու-
նենալ նաև առանձին թղթապանակ, ինչպես
ասում են՝ անհրաժեշտ պաշար հավաքելու
համար։ Ագիտատորը թղթապանակի մեջ
կուտակում է թերթերից, ժուռնալներից կտրած
առաջնորդողներ, հոդվածներ, ինֆորմացիա-
ներ, գեղարվեստական շարադրանքներ և
այն ամենը, ինչ իրեն կարող է պետք գալ։
Շատ հաճախ նախօրոք կուտակած նյութերը
այնքան հետաքրքիր են լինում, որ ագիտա-
տորը նրանց մի մասը մտցնում է գրույցնե-
րի թեմատիկ պլանի մեջ։
Զրույցի նախապատրաստական աշխա-
տանքի զգալի բաժինը պետք է կազմի տե-
ղական թեմաների ընտրության և այդ հիման
վրա աշխատատեղին վերաբերող նյութերի,

փաստերի ու թվերի հավաքումը։ Այդ բանին հասնելու համար, ագիտատորը պետք է ամենից առաջ լավ գիտենա ձեռնարկությունը, հիմնարկությունը, կոլխոզը, սովխոզը։ Այդ դեռ բավական չէ. նա պետք է, եթե ոչ հիմնովին, ապա ընդհանուր գծերով տեղյակ լինի այս կամ այն ցեխի, բրիգադայի աշխատանքի սկզբունքներին։ Ագիտատորը զրույցից առաջ իր մոտ պետք է ունենա ձեռնարկության, ինչպես նաև իր ունկնդիրների աշխատանքի թարմ ցուցանիշները, զրույցի ընդհանուր բնույթ կրող հարցերը ունկնդիրների աշխատանքի, ինչպես նաև ձեռնարկության առջև դրված խնդիրների հետ կապելու համար։

Զրույցի նախապատրաստվելով, ագիտատորը անհրաժեշտության դեպքում ագիտացիոն պարապմունքին կարող է մասնակից դարձնել ձեռնարկության, հիմնարկության, կոլտնտեսության կամ սովխոզի ղեկավար ընկերներին, մասնագետներին, այլ ցեխերում ու բրիգադներում աշխատող առաջավորներին, որոնք ագիտատորի հետ պայմանավորված և նախապատրաստված հարցի շուրջը նյութ ունենալով կպարզաբանեն, կլրացնեն թեմային վերաբերող հարցերը։



Վերջապես զրույցի նախապատրաստման անհրաժեշտ մասը պետք է կազմի այսպես կոչված՝ զրույցի կազմակերպական նախապատրաստությունը։ Ագիտատորը նախօրոք պետք է որոշի հաջորդ ագիտացիոն պարապմունքի վայրը, այնտեղ հավաքի ցուցադրական նյութերը, ունկնդիրներին ժամանակին տեղյակ պահի պարապմունքի վայրի, ինչպես նաև զրույցի թեմայի մասին, հնարավորություն տալով ունկնդիրներին իրենց հերթին նախապատրաստվելու զրույցի քննարկմանը։

Ագիտատորի աշխատանքի հաջողությունը կախված է այն բանից, թե նա որքանով խելացի, ջանասեր կերպով կնախապատրաստի ագիտացիոն պարապմունքը։ Միայն նախապատրաստված զրույցը կլինի կոնկրետ, բովանդակալից, նպատակասլաց և կունենա անպայման գործնական հետևանք։

---

## ՔԱՆԱՔԵՌԳԷՍԻ ԱԳԻՏԿՈԼԵԿՏԻՎԸ

Քանաքեռգէսի պարտիական կազմակերպության ագիտկոլեկտիվը աշխատավորների շրջանում ագիտացիոն-մասսայական օրինակելի աշխատանք է կազմակերպում։

Ագիտկոլեկտիվն ունի իր աշխատանքի պլանը, ըստ որի սիստեմատիկ կերպով տեղի ունեցող սեմինար պարապմունքներում ագիտատորների համար կարդացվում են դասախոսություններ, նրանց ցուցումներ են տրվում առաջիկա աշխատանքների համար, կատարվում է ագիտացիոն աշխատանքի լավագույն փորձի փոխանակում։ Միայն վերջին երկու ամիսների ընթացքում սեմինար պարապմունքներ են տեղի ունեցել հետևյալ թեմաների շուրջը՝ «Սովետական ժողովրդի պայքարը խաղաղության ամրապընդման համար», «Կոմունիզմի մեծ կառուցումները», «Ստալինյան Կոնստիտուցիան ամենադեմոկրատական կոնստիտուցիան է աշխարհում», «Ի՞նչ տվեց Հոկտեմ-



բերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան հայ ժողովրդին», «Սովետական ժողովրդական դատարանը ամենադեմոկրատական դատարանն է աշխարհում»։

Ագիտատորներին, ինչպես նաև բանվորական ավանի բնակչությանը, մեծ օգնություն է ցույց տալիս ագիտպունկտը, որը դարձել է ագիտացիոն-մասսայական աշխատանքի կենտրոնը։ Այցելուների տրամադրության տակ այնտեղ մշտապես լինում են թարմ թերթեր ու ժուռնալներ, քաղաքական և գեղարվեստական գրականություն, քարտեզներ, դիագրամներ և ցուցադրական այլ նյութեր։ Ագիտպունկտն ունի իր աշխատանքի պլանը։ Այդ պլանով սիստեմատիկ կերպով զեկուցումներ ու զրույցներ են կազմակերպվում ագիտատորների, բանվորների ու ծառայողների, տնային տնտեսուհիների համար։ Կազմակերպվում են նաև հարց ու պատասխանի երեկոներ, թերթերի բարձրաձայն ընթերցանություն և այլն։ Զրույցների քննարկմանը մասնակցում են ունկնդիրները, որի շնորհիվ էլ պարապմունքներն անցնում են հետաքրքիր և աշխույժ։

Առանձնապես հետաքրքիր անցավ վերջերս տնային տնտեսուհիների համար կազ-

մակերպված «Ո՞նչ տվեց սովետական իշխանությունը հայ ժողովրդին» թեմայով զրույցը: Ագիտատոր Ռ. Ալեքսանյանը բազմաթիվ ցայտուն օրինակներով պատմեց այն վիթխարի նվաճումների մասին, որ ձեռք է բերել մեր ռեսպուբլիկան սովետական իշխանության 31 տարիների ընթացքում՝ ժողովրդական տնտեսության, կուլտուրայի ու գիտության զարգացման բնագավառում: Նա խոսեց հայ ժողովրդի նկատմամբ նրա մեծ ազատարար, հարազատ Ստալինի կողմից ցուցաբերվող ամենօրյա հայրական հոգատարության մասին:

Երբ ագիտատորն իր խոսքն ավարտեց, ձայն խնդրեց տնային տնտեսուհի Ն. Հեքիմյանը: «Մեր երկիրը փոխվում, ծաղկում է օր-օրի, մեր աչքերի առջև,—ասաց նա:— Մեր հզոր հիդրոէլեկտրակայանը, երբեմնի քարքարոտ սարալանջին կառուցված մեր գեղեցիկ, ծառ ու կանաչի մեջ թաղված բանավանը, մեր չքնաղ նոր Երևանը, բոլորը, բոլորը կառուցել է սովետական իշխանությունը: Սովետական իշխանությունը մեզ, բոլոր կանանց համար, ապահովել է երջանիկ ու ապահով մայրություն, մենք շրջապատված ենք փառքով ու պատվով»:



Կարելի է բերել նաև բազմաթիվ ուրիշ օրինակներ՝ Քանաքեռգէսի ագիտկոլեկտիվի ագիտատորների աշխատանքից, ցույց տալու համար, թե ինչպես նրանք սերտորեն կապված են աշխատավորների հետ, օգնում են նրանց ավելի լավ աշխատելու:

Քանաքեռգէսի հիմնական վերանորոգման բաժնում փորձառու բանվորների հետ միասին աշխատում են նաև զգալի թվով երիտասարդներ: Այս տարվա դեռ սկզբին հիմնական վերանորոգման բաժնի ագիտատոր ընկ. Ս. Գրիգորյանը իր առջև խնդիր դրեց՝ կազմակերպել լավագույն աշխատողների փորձի փոխանակումը, օգնել երիտասարդներին ավելի լավ աշխատելու և որակավորվելու: Ագիտատոր Գրիգորյանը արտադրության մեջ համարվում է լավագույն մասնագետ: Նա համբերատար, համառ աշխատանքով հասավ իր նպատակին: Երիտասարդ շատ բանվորներ, որոնց թվում Ա. Գևորգյանը, Ս. Սարգսյանը, Վ. Ասատրյանը, որոնք տարվա սկզբին կատարում էին պարզ, երկրորդական աշխատանքներ, այժմ արդեն դարձել են որակյալ նորոգողներ:

Սերտորեն կապված լինելով բաժնի աշխատողների հետ, ագիտատոր Գրիգորյանը մշտապես տեղեկանում է նրանց հուզող,

հետաքրքրող հարցերին, բավարարում, ըն-դառաջում նրանց։ Զրույցներից մեկի ժա-մանակ ունկնդիրները ցանկություն հայտ-նեցին էքսկուրսիա գնալ Սևանի հիդրոէլեկ-տրակայանը։ Գրիգորյանը այդ մասին խո-սեց դիրեկցիայի հետ և խնդրեց ավտոմեքե-նա տրամադրել դեպի Սևան էքսկուրսիա կազմակերպելու համար։ Հաջորդ կիրակի օրը իր ունկնդիրներին՝ 22 բանվորների ու բանվորուհիների, ագիտատոր Գրիգորյանը էքսկուրսիա տարավ Սևանի հիդրոէլեկտրա-կայանը, ուր նրանք դիտեցին կայանը, ծա-նոթացան նրա կոլեկտիվի աշխատանքի հետ։

Քանաքեռգէսի առաջավոր ցեխերից է էլեկտրա-մեխանիկական ցեխը, որի կո-լեկտիվն աշխատում է համերաշխ, ճշտորեն կիրառելով ադրեգատների շահագործման տեխնիկական և անվտանգության կանոննե-րը։ Ցեխի կոլեկտիվի այդ լավագույն աշ-խատանքում իր բաժինն ունի նաև ագիտա-տոր Վ. Գեմոյանը։ Մշտապես տեղյակ լի-նելով ցեխի ամբողջ արտադրական կյան-քին, իր տրամադրության տակ ունենալով ունկնդիրների աշխատանքի մասին թարմ տեղեկություններ, իր զրույցների ժամանակ նա ունկնդիրների ուշադրությունը կենտրո-



նացնում է օրվա հրատապ հարցերի վրա, բացահայտում թերությունները, ցույց է տալիս ավելի լավ աշխատելու եղանակնե-րը, բանվորներին խրախուսում, ավելի լայ-նորեն ծավալում սոցիալիստական մրցու-թյունը։

Քանաքեռգէսի ագիտկոլեկտիվն իր վրա է վերցրել բանվորական ավանի բնակչության մեջ քաղաքական-մասսայական աշխատանք կազմակերպելու գործը։ Թաղամասերին ամ-րացված 19 ագիտատորներ սիստեմատիկո-րեն, պլանավորված ագիտացիոն-մասսայա-կան աշխատանք են կազմակերպում բնակ-չության շրջանում։ Ահա երկու օրինակ։

Ագիտատորներ Կ. Փիրումյանին, Հ. Սա-նոյանին և Ս. Մրրիկյանին հանձնարարված է ագիտացիոն-մասսայական աշխատանք տանել № 1 շենքի բնակիչների շրջանում։ Ամեն շաբաթ, որոշված օրերին, նրանք լի-նում են իրենց ունկնդիրների մոտ, զրույց-ներ են անցկացնում կոմունիզմ կառուցող մեր Հայրենիքի հոյակապ հաղթանակների մասին, միջազգային դրության, խաղաղու-թյան համար աշխարհի ժողովուրդների մղած պայքարի մասին։ Նրանք առանձին ջանասի-րությամբ են մասսայականացնում բոլշևիկ-

յան պարտիայի և Սովետական Կառավարության որոշումները։ Ագիտատորների նախաձեռնությամբ շենքում լույս է ընծայվում պատի թերթ, բնակիչների համար մի քանի անգամ կազմակերպվել են զեկուցումներ։ Գարնանը ագիտատորները բնակիչների ուժերով կանաչապատեցին և ծաղկազարդեցին շենքի շրջապատը, մրցություն կազմակերպեցին հարևան շենքի բնակիչների հետ՝ շենքերը, նրանց շրջապատը մշտապես լավ, բարեկարգ վիճակում պահելու համար։ Այդ մրցությունից № 1 շենքի բնակիչները հաղթող դուրս եկան։

Բանավանում ագիտացիոն-մասսայական աշխատանք տանող ագիտատորների մեջ իր լավագույն աշխատանքով աչքի է ընկնում նաև Գ. Արզումանյանը։ Նրա ունկնդիրները՝ № 4 շենքի բնակիչները, յուրաքանչյուր անգամ սիրով են դիմավորում իրենց ագիտատորին։ Արզումանյանի ունկնդիրները տնային տնտեսուհիներ են։ Նա ձգտում է իր զրույցներն անցկացնել այնպես, որպեսզի նրանք հետաքրքիր և հասկանալի լինեն ունկնդիրների համար։ Այսպես, օրինակ, կոմունիզմի մեծ կառուցումների մասին նա ունեցել է մի քանի զրույցներ։ Յուրաքանչյուր անգամ իր հետ տանելով նորա-



կառույցները պատկերող պլակատը, նա ցայտուն օրինակներով և համեմատություններով պատմում էր, թե ինչ են ներկայացնելու այդ նորակառույցները իրենցից, տնտեսական ինչպիսի նշանակություն կունենան նրանք մեր երկրի համար։ Ժուռնալներում և թերթերում տպագրված նկարներով նա ցույց էր տալիս, թե արդեն ինչ աշխատանքներ են կատարված նորակառույցներում, հայրենական արդյունաբերությունը ինչ մեքենաներով ու մեխանիզմներով է զինում կառուցումները և այլն։

Քանաքեռգէսի ագիտկոլեկտիվը պարտիական կազմակերպության լավագույն օգնականը հանդիսացավ նաև ժողովրդական դատարանների ընտրությունների ժամանակաշրջանում աշխատավորների մեջ ագիտացիոն-մասսայական աշխատանք ծավալելու գործում։

Հ. ԱԶԻԶԲԵԿՅԱՆ
ՀԿ(բ)Պ Երևանի Միկոյանի ռայկոմի
քարտուղար

# ԻՆՉ Է ՏԵՂԻ ՈՒՆԵՆՈՒՄ ԵԳԻՊՏՈՍՈՒՄ

Եգիպտոսում տեղի ունեցած վերջին դեպքերը լիովին հաստատում են եգիպտական այն հին առացվածքի խոր ճշմարտությունը, թե ամխայն մումիան կարող է լուռումունջ տառապել հավիտյանս։ Եգիպտական ժողովուրդը երկար տառապանքներից հետո ոտքի է ելել՝ սեփական երկիրը անգլիական գաղութարարների օկուպացիայից ազատագրելու համար։

Եգիպտական ժողովուրդը տասնամյակներ շարունակ տնքում է անգլիական իմպերիալիզմի ծանր լծի տակ։ Անգլիացիները Եգիպտոսը օկուպացնել սկսեցին դեռ 1882 թվականին, երբ բրիտանական զորքերը զենքով ներխուժեցին այդ երկիրը, անգլիական նավերից հրետանային ռմբակոծության ենթարկելով Ալեքսանդրիան, դաժան դատաստան տեսնելով եգիպտական հայրենասերների հետ, որոնք պաշտպանում էին իրենց երկրի անկախությունը։ Անգլիացիները Սուդանը զավթեցին 1898 թվականին, ռազմական արշավանքի ժամանակ։ Սուդանի վրա անգլիական իշխանությունը ամրապնդվեց 1899 թվականին՝ Սուդանը համատեղ տիրելու մասին կնքված անգլո-եգիպտական կոնվենցիայով։ Այդ կոնվենցիայի համաձայն Սուդանի իշխանությունը իրականում պատկանում է



Անգլիային, իսկ Եգիպտոսի մասնակցությունը Սուդանի կառավարմանը՝ զուտ անվանական է։

Եգիպտոսը գտնվում է երկու աշխարհամասերի՝ Ասիայի և Ամերիկայի միացման սահմանագլխում, այնտեղ, որտեղ գտնվում են Անգլիայի հիմնական տիրապետությունները։ Եգիպտոսի տերիտորիայով են անցնում այն ճանապարհները, որոնք Եվրոպան ու Ամերիկան կապում են Մերձավոր ու Միջին Արևելքի երկրների հետ, Հարավային Ամերիկայի, Հնդկաստանի և Հեռավոր Արևելքի հետ։ Աֆրիկայում և Ասիայում Անգլիայի ունեցած տիրապետությունների նկատմամբ Եգիպտոսը խաղում է գլխավոր ավանպոստի դեր։ Բրիտանական կայսրության ստրատեգիայի և էկոնոմիկայի մեջ Եգիպտոսի նշանակությունը հատկապես մեծացավ Սուեզի ջրանցքի կառուցումից հետո։ Ջրանցքի կառուցումն սկսվեց 1859 թվականին։ Չնայած այն բանին, որ ջրանցքի անցկացրած տեղը մի հարթ տարածություն էր և անհրաժեշտություն չէր լինում շլյուզներ դնելու, այնուամենայնիվ ջրանցքի կառուցումը տասնյակ տարիներ տևեց։ Այդ բացատրվում է նրանով, որ ջրանցքի շինարարությունը հիմնականում կատարվում էր ձեռքով, եգիպտական բանվորների միջոցով, որոնց կառավարությունը շինարարության վայրն էր քշում բռնությամբ։ Տանջալից աշխատանքը և հիվանդությունները գերեզման տարան շինարարության վրա աշխատող մոտ 20 հազար եգիպտացիների։ Լիակատար հիմք ունենալով,

կարելի է ասել, որ Սուեզի ջրանցքը կառուցվել է եգիպտական ժողովրդի ոսկորներով։ Սուեզի ջրանցքը խոշոր չափով կրճատում է Եվրոպայից Ասիա տանող ճանապարհները։ Օրինակ՝ նա Լոնդոն—Բոմբեյ ճանապարհը կրճատում է 24 օրով, Մարսելից Բոմբեյ տանող ճանապարհը՝ կրկնակի չափով։

Անչափ մեծ է ջրանցքի նշանակությունը անգլիական իմպերիալիզմի համար, այդ պատճառով էլ նա ամեն գնով ցանկանում է ամրապնդել իր դիրքերը Եգիպտոսում, խեղդել եգիպտական ժողովրդի ազգային-ազատագրական ձգտումները։

Եգիպտոսի բնակչության թիվը հասնում է 19,5 միլիոնի, որոնց հիմնական մասը արաբներ են։ Գյուղական բնակիչների թիվը կազմում է 14,5 միլիոն, որոնք զբաղվում են գլխավորապես բամբակագործությամբ։ Քաղաքային բնակչությունը կենտրոնացված է Կահիրեյում՝ աշխարհի այդ խոշորագույն քաղաքներից մեկում, ինչպես նաև Ալեքսանդրիա, Պորտ-Սայիդ, Իսմայիլի և այլ քաղաքներում։

Անգլիական կառավարությունը, իր տրադիցիոն բրիտանական քաղաքականության համապատասխան, Եգիպտոսը դարձրեց իր գաղութը։ Նեղոսի հովտի ամենից ավելի արգավանդ հողերը հանձնվեցին օտարերկրյա վերաբնակ կալվածատերերին և բրիտանական ֆիրմաներին։ Անգլիական կապիտալն իր ձեռքը վերցրեց արդյունաբերությունն ու առևտուրը։ Եգիպտոսը



վերածվեց անգլիական բամբակեղենի արդյունաբերության հումքի բազայի։

Երկրի միլիոնավոր բնակիչներ սոսկալի պայմաններում են ապրում։ 14,5 միլիոն գյուղացիներից 12 միլիոնը հող չունի։ Երկու միլիոն գյուղացիական գաճաճ տնտեսությունները ընդհանուր առմամբ երեք անգամ քիչ հող ունեն, քան 12 հազար խոշոր կալվածատերերը, որոնք գյուղական բնակչության մեկ տոկոսից էլ պակաս են։ Հուշակավոր եգիպտական բամբակի երկրում գյուղացիների մեծ մասը ցնցոտիներով է ման գալիս։

Եգիպտոսն աշխարհում առաջին տեղերից մեկն է բռնում՝ բնակչության մահացությամբ։ Տղամարդկանց կյանքի միջին տևողությունը կազմում է 24 տարի, իսկ կանանցը՝ 27 տարի։ Պաշտոնական տվյալների համաձայն, Եգիպտոսի ամբողջ գյուղական բնակչության համար ընդամենը հազար բժիշկ կա։ Անցյալ տարիների զորակոչների ժամանակ պատանիների միայն 11 տոկոսն է պիտանի ճանաչվել զինվորական ծառայության համար։ Բացառիկ չափով մեծ է անգրագիտության տոկոսը. գյուղում անգրագետ է պատանիների 95 տոկոսը և աղջիկների՝ 98 տոկոսը։ Քաղաքներում կարդալ և գրել գիտի տղամարդկանց միայն 20 տոկոսը և կանանց՝ 4 տոկոսը։

Եգիպտական ժողովուրդը, հեծելով գաղութարարների լծի տակ, երբեք չի դադարեցրել իր ազգա-

յին-ազատագրության համար մղվող պայքարը։ Անկախության համար շարժումը հատկապես լայնորեն ծավալվեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռեվոլյուցիայից հետո։ Անգլիացիները, որոնք երկիրը պատել էին կախաղաններով, այնուամենայնիվ չկարողացան դիմանալ ժողովրդական շարժմանը և 1922 թվականին հարկադրված եղան ձևականորեն անկախություն տալ Եգիպտոսին։ Սակայն շուտով պարզվեց, որ այդ «անկախությունը» մի կեղծիք էր՝ ժողովրդին խաբելու համար։ Անգլիական օկուպացիոն զորքերը մնացին երկրում, օտարերկրյա կալվածատերերը առաջվա նման իրենց ձեռքն էին պահում գյուղացիներից խլած հողերը, իսկ արդյունաբերողներն ու վաճառականները նույն փութկոտությամբ երկրից դուրս էին տանում նրա հարստությունները։

1936 թվականին անգլիական իմպերիալիստները կարողացան Եգիպտոսի կառավարության հետ կնքել այսպես կոչված «դաշինքի պայմանագիր» քսան տարով։ Թե իրականում ինչ էր իրենից ներկայացնում այդ պայմանագիրը, երևում է թեկուզ նրա հետևյալ հոդվածներից։ Այսպես, 1936 թվականի պայմանագիրը Եգիպտոսին պարտավորեցնում էր Անգլիայի տրամադրության տակ դնել «իր տրամադրության տակ եղած բոլոր հնարավորություններն ու օգնությունը», ներառյալ՝ նրա նավահանգիստների, օդանավակայանների և հաղորդակցության միջոցների օգտագործումը (հոդված 7)։ Այդ ստրկական պայմանագրի համա-



ձայն, Սուեզի ջրանցքի գոտում պահպանվում էին անգլիական ցամաքային և օդային ուժերը, ռազմա-ծովային բազաները և այլն։ Եգիպտական զորքերին սովորեցնելու իրավունք ունեին միայն անգլիական սպաները։ Անգլիական «խորհրդականներ» էին պահվում եգիպտական ոստիկանատանը, զանազան գերատեսչություններում և մինիստրություններում։

Նույն այդ պայմանագրով վերականգնվում էր այսպես կոչված Սուդանի 1899 թվականի կոնվենցիան, որը նախատեսում էր Սուդանի անգլո-եգիպտական «համատեղ» կառավարումը։ Ձևականորեն «անգլո-եգիպտական» կոչվելով՝ Սուդանը մնում էր, և մինչև այժմ էլ մնում է, որպես տիպիկ անգլիական գաղութ։ Սուդանում տերուտնօրեն է բրիտանական նահանգապետ Ռոբերտ Խաուն՝ սուդանական ժողովրդին շահագործող իր գաղութարար սատրապների մի ամբողջ հաստիքով։ Տիրելով Սուդանին, անգլիացիները վերահսկում են Նեղոսի վերին հոսանքի շրջանում եղած իռրիգացիոն կառուցումներին և այդ ճանապարհով մշտական ճնշում են գործ դնում Եգիպտոսի վրա, սպառնալով Նեղոսի հովտի բնակիչներին զրկել ջրից։

Այստեղից պարզ է, թե ինչու Եգիպտոսի վզին փաթաթված 1936 թվականի պայմանագիրը վերացնելու պահանջը դարձել է ազգային-ազատագրական պայքարի դրոշը։ Ձեռնարկություններում տեղի ունեցող գործադուլները, գյուղացիական ապստամբու-

թյունները, Կահիրեի և Ալեքսանդրիայի համալսարանների ուսանողների հակաիմպերիալիստական բուռն ցույցերը հարկադրեցին այն ժամանակվա Նուկրաշի-փաշայի կառավարությանը Անվտանգության խորհրդում հարց դնել բրիտանական զորքերը դուրս բերելու Եգիպտոսից։ Այդ պահանջը վճռականապես պաշտպանեցին Սովետական Միության և դեմոկրատական երկրների դելեգացիաները։ Սակայն ամերիկա-անգլիական բլոկի անդրկուլիսային գործարքները խանգարեցին Եգիպտոսի ժողովրդի իղձերի իրականացմանը։

Վերջին տարիներին անգլիական իմպերիալիստները բազմիցս փորձեր են արել՝ ստիպել Եգիպտոսին ռազմա-քաղաքական ստրկացուցիչ համաձայնագրեր կնքելու, սակայն ամեն անգամ գաղութարարների այդ փորձերին խանգարել է ժողովրդական մասսաների հակաիմպերիալիստական շարժումը։ Եգիպտական ժողովուրդը պահանջում է, որ անվերապահորեն դուրս տարվեն գաղութարար զորքերը և միավորվի Նեղոսի հովիտը։ Եգիպտացիները տասնյակ անգամ լսել են անգլիական պահպանողական և լեյբորիստական կառավարությունների խոստումները, թե նրանք զորքերը դուրս կբերեն Եգիպտոսից, և ամեն անգամ այդ խոստումները ստոր խաբեություն են եղել։

Պատերազմի անգլո-ամերիկյան հրձիգները վերջերս դիմեցին մի նոր խորամանկության։ Նրանք Եգիպտոսի կառավարությանն առաջարկեցին՝ Սուեզի ջր-



անցքի գոտուց «դուրս բերել» անգլիական զորքերը, դրանք փոխարինելով «միավորված»... անգլիական, ամերիկյան և թյուրքական զորքերով։ Ագրեսորները նմանապես առաջարկեցին՝ Եգիպտոսը մտցնել «Միջին Արևելքի համատեղ պաշտպանության սիստեմի մեջ», այսինքն՝ պարզ ասած, եգիպտական ժողովրդին իրենց հանցավոր պլանների մեջ քաշել։

Եգիպտական գործերից ուզում են իրենց համար օգուտ քաղել նաև Ուոլ-ստրիտի տերերը։ Ամերիկյան իմպերիալիստները գնալով ավելի խորն են թափանցում երկրի էկոնոմիկայի մեջ։ Եգիպտոսը և Սուդանը հեղեղելով իրենց ցածրորակ ապրանքներով, ԱՄՆ-ի մոնոպոլիստական ընկերությունները աշխատում են կոնցեսիայով իրենց ձեռքը գցել Եգիպտոսի նավթի և ուրանի հանքերը։ Վաշինգտոնի կոնգրեսմենները եգիպտացիների վզին փաթաթում են ստրկացուցիչ փոխառություններ։

Գաղութարարների կամայականությունները լցրել են եգիպտական ժողովրդի համբերության բաժակը։ Իրանում տեղի ունեցած իրադարձությունները, որտեղ գիշատչական Անգլո-իրանական նավթային ընկերության դեմ ոտքի է ելել ամբողջ ժողովուրդը, նոր զարկ տվին Եգիպտոսի բազմաչարչար բնակչության ազգային-ազատագրական շարժման ծավալմանը։ Այս տարի համարյա ամբողջ ժամանակ երկրում տեղի էին ունենում աշխատավորների միտինգներ ու ցույցեր, որտեղ նրանք պահանջում էին՝ վերացնել 1936 թվականի

պայմանագիրը և երկրից դուրս բերել անգլիական օկուպանտներին։ Ժողովրդի ընդհանուր զայրույթի աղդեցության տակ, Նահաս-փաշայի կառավարությունը հոկտեմբերի 8-ին պառլամենտում օրինագիծ մտցրեց անգլո-եգիպտական պայմանագիրը, Սուդանի կոնվենցիան չեղյալ հայտարարելու մասին և հայտարարեց, որ Եգիպտոսի ներկայիս թագավոր Ֆարուկը հռչակվում է Եգիպտոսի և Սուդանի թագավոր։ Հոկտեմբերի 15-ին պառլամենտը միաձայն հաստատեց այդ օրինագիծը։

Ջգտելով ամեն գնով պահպանել իրենց դիրքերը Սուեզի ջրանցքի կարևոր ստրատեգիական գոտում և անպատիժ կերպով շարունակել մերձավորարևելյան երկրների նավթային աղբյուրների շահագործումը, անգլո-ամերիկյան գաղութարարները ցանկանում են արյան մեջ խեղդել եգիպտական և սուդանական ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումը։ Ի լրումն այն 100 հազար զորքերի, որոնք վաղուց արդեն օկուպացրել են Եգիպտոսը, նրանք այժմ նոր զորքեր են բերում Անգլիայից, Կիպրոս ու Մալթա կղզիներից և աֆրիկյան գաղութներից։

Սուեզի ջրանցքի գոտում անգլիական զորքերը կողոպտում են քաղաքներն ու գյուղերը, սպանում անզեն բնակչությանը՝ կանանց, երեխաներին և ծերերին։ Ջրանցքի 200 կիլոմետրանոց գոտու արևելյան ամբողջ երկարությամբ անգլիական զորքերը գրավել են բոլոր կարևորագույն դիրքերը։ Նրանք տան-



կերով շրջափակել են Սուեզից Կահիրե տանող բոլոր ճանապարհները, պարեկային հսկողություն են հաստատել եգիպտական քաղաքների փողոցներում, նոր ռազմանավեր և պարաշյուտա-դեսանտային զորամասեր են ուղարկում Եգիպտոս։

Սուեզի ջրանցքի շրջանում անգլիացիների կողմից սարքվող հերթական պրովոկացիաներից մեկն էր՝ անգլիական զորքերի դեկտեմբերի 3-ի զինված խոշոր ընդհարումը եգիպտական ոստիկանության հետ։ Այդ ընդհարման ժամանակ անգլիացիներն օգտագործեցին զրահամեքենաներ և ավտոմատ զենք, որի հետևանքով սպանվեց եգիպտական 16 ոստիկան ու քաղաքացիական անձինք և վիրավորվեց 68 մարդ։ Հետևյալ օրը, դեկտեմբերի 4-ին, երբ Սուեզ քաղաքի ավելի քան 15 հազար բնակիչներ դուրս եկան փողոց, որպեսզի մասնակցեն անգլիական զորքերի ընդհարման ժամանակ սպանված եգիպտացիների թաղմանը, անգլիական 3 տանկ և 7 զրահամեքենա կրակ բացեցին թափորի մասնակիցների վրա։ Դրա հետևանքով սպանվել է ևս 15 մարդ, իսկ 34 մարդ, այդ թվում մի փոքրիկ աղջիկ, ծանր վիրավորվել է։

Եգիպտոսի կառավարությունը խիստ բողոք հայտնեց Անգլիային՝ Սուեզի ջրանցքի գոտում նրա զինված ուժերի կատարած ագրեսիվ գործողությունների համար և պահանջեց, որ նա զորքերը դուրս բերի այն տեղերից, որոնք օկուպացրել է վերջին օրերս։ Անգլիայի զինված ուժերի ագրեսիվ գործողությունները

հարկադրեցին Եգիպտոսի կառավարությանը արտակարգ դրություն մտցնել երկրում։ Եգիպտոսի պրեմյեր մինիստր Նահաս-փաշան հոկտեմբերի 17-ին հայտարարեց, թե երկիրն այժմ ապրում է մի մոմենտ, որն ամենալուրջ մոմենտն է նրա ամբողջ պատմության մեջ, և որ կառավարությունը պատրաստվել է ամեն տեսակ պատահականությունների։ Եգիպտոսի Պետական խորհուրդը հոկտեմբերի 21-ին հավանություն տվեց ընդհանուր զորահավաքի օրենքին։ Ստեղծվել է գերագույն ռազմական խորհուրդ։ Դեկտեմբերի 15-ին ստացված հաղորդագրության համաձայն Եգիպտական կառավարությունը որոշել է իր դեսպանին ետ կանչել Լոնդոնից։

Օտարերկրյա օկուպանտներից իր երկիրն ազատագրելու համար եգիպտական ժողովրդի մղած պայքարը պաշտպանություն է գտնում Մերձավոր Արևելքի շատ երկրների ժողովուրդների կողմից։ Ի նշան եգիպտական ժողովրդի հետ ունեցած համերաշխության՝ Սիրիայում, Լիբանանում, Իրաքում, Տրանսհորդանիայում տեղի են ունենում աշխատավորների ցույցեր։

Օկուպանտների բանի գործողությունները ցասման և զայրույթի նոր ալիք են առաջ բերում բնակչության մեջ։ Եգիպտոսում, Իրանում և այդ շրջանի այլ երկրներում տեղի ունեցող իրադարձությունները ցույց են տալիս, որ գաղութային սիստեմը և իմպերիալիզմի քաղաքականությունը ճեղքեր են տալիս բոլոր կողմերից։



Հոկտեմբերի 14-ին մամուլում հրապարակվեցին ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի և Թյուրքիայի կառավարությունների առաջարկները, որոնցով նրանք պաշտոնապես դիմեցին Եգիպտոսի կառավարությանը՝ Մերձավոր և Միջին Արևելքի համատեղ «պաշտպանության» համար այսպես կոչված «դաշնակցային միջինարևելյան հրամանատարություն» ստեղծելու հարցով։

Մերկացնելով այդ առաջարկների իմպերիալիստական բնույթը, Սովետական կառավարությունը Եգիպտոսի, Սիրիայի, Լիբանանի, Իրաքի, Սաուդական Արաբիայի, Եմենի և Իսրայելի կառավարություններին ուղղած իր նոտաներում նշեց, որ «...չորս երկրների առաջարկներով նախատեսվող միջինարևելյան հրամանատարության ստեղծման պլանը ընդհանուր ոչինչ չունի Մերձավոր ու Միջին Արևելքում խաղաղությունն ու անվտանգությունը պահպանելու շահերի հետ, ինչպես նաև այդ շրջանի պետությունների իսկական ազգային շահերի հետ»։ Այդ «...պլանի իրագործումը կհանգեցներ Մերձավոր ու Միջին Արևելքի երկրների փաստական ռազմական օկուպացմանը Ատլանտյան բլոկը կազմակերպող երկրների զորքերի, ամենից առաջ ԱՄՆ-ի և Անգլիայի, ինչպես նաև մի քանի այլ պետությունների զորքերի կողմից»։

«Մերձավոր ու Միջին Արևելքի երկրների պաշտպանության շահերի ամեն մի վկայակոչում իրականում չոկ մի քող է, որը ծածկում է Եգիպտոսի, ինչպես

նաև Մերձավոր ու Միջին Արևելքի մյուս երկրների
ներգրավումը Ատլանտյան բլոկի ռազմական միջոցա-
ռումների մեջ, որոնք ուղղված են Սովետական Միու-
թյան և ժողովրդական դեմոկրատիայի երկրների
դեմ»։
ԱՄՆ-ի, Մեծ Բրիտանիայի, Ֆրանսիայի և Թյուր-
քիայի կառավարություններին ուղղված նոյեմբերի
24-ի նոտայում, Սովետական Կառավարությունը բա-
ցահայտելով այսպես կոչված դաշնակցային միջին-
արևելյան հրամանատարություն ստեղծելու ագրեսիվ
դիտավորությունները, հայտարարեց. «ՍՍՌՄ Կա-
ռավարությունն անհրաժեշտ է գտնում ԱՄՆ-ի Կառա-
վարության ուշադրությունը հրավիրելու այն բանի
վրա, որ ինքը չի կարող անտեսել այդ նոր ագրեսիվ
պլանները, որ արտահայտվում են Սովետական Միու-
թյան սահմաններից ոչ հեռու գտնվող շրջանում մի-
ջին-արևելյան հրամանատարություն ստեղծելու մեջ։
Սովետական Կառավարությունը նաև անհրաժեշտ է
գտնում հայտարարելու, որ այն դրության համար, որ
կարող է ծագել դրա հետևանքով, պատասխանատվու-
թյունը կընկնի ԱՄՆ-ի Կառավարության վրա և հիշյալ
հրամանատարության ստեղծման մյուս նախաձեռնող-
ների վրա»։

---



# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Ի. Վ. ՍՏԱԼԻՆԸ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՄԵԾ ԱՌԱՋՆՈՐԴԸ ԵՎ ՈՒՍՈՒՑԻՉՆ Է

1. Ի. Վ. Ստալինը Վ. Ի. Լենինի մերձավոր զինա-կիցն է, նրա գործի մեծ շարունակողը։

2. Ի. Վ. Ստալինը ՍՍՌՄ-ում սոցիալիզմի հաղթա-նակի և կոմունիզմի կառուցման ոգեշնչողն ու կազ-մակերպիչն է։

3. Ի. Վ. Ստալինը բոլոր ժամանակների մեծագույն զորավարն է, Եվրոպայի և ամբողջ աշխարհի ժողո-վուրդներին ֆաշիստական ստրկացումից փրկողը։

4. Ի. Վ. Ստալինը ամբողջ աշխատավոր մարդկու-թյան առաջնորդը և ուսուցիչն է, հանուն խաղաղու-թյան, դեմոկրատիայի և սոցիալիզմի մղվող պայ-քարում։

5. Ուսումնասիրենք լենինյան-ստալինյան ուսմուն-քը, Լենինի և Ստալինի կենսագրությունները։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ընկեր Ստալինին— մեծ առաջնորդին և ուսուցչին, Լենինի անմահ գործի շարունակողին: *«Պարտիական կյանք» № 12, 1949 թ., «Ս. Հ.» 1949 թ. դեկտեմբերի 21։*

Կոմունիստական պարտիայի և սովետական ժողովրդի մեծ առաջնորդը և ուսուցիչը: *«Ս. Հ.» 1949 թ. դեկտեմբերի 16։*

Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալին: *Համառոտ կենսագրություն։*

## II. ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆ ԾԱՎԱԼԵՆՔ ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՕՊԵՐԱՑԻԱ ԳԵՐԱԶԱՆՑ ՈՐԱԿՈՎ ԿԱՏԱՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ

*1. Ընկ. ընկ. Ա. Ժանդարովայի և Օ. Ագաֆոնովայի առաջարկությունը՝ արտադրական յուրաքանչյուր օպերացիա գերազանց որակով կատարելու համար սոցիալիստական մրցություն ծավալելու վերաբերյալ՝ յուրաքանչյուր ձեռնարկության աշխատանքի որակական ցուցանիշների հետագա բարելավման ուղի է հանդիսանում։*

*2. Արտադրական յուրաքանչյուր օպերացիա գերազանց որակով կատարելը՝ աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման և պլանը ժամկետից շուտ կատարելու գրավականն է։*



*3. Արտադրական յուրաքանչյուր օպերացիա գերազանց որակով կատարելը՝ խոտանը պակասեցնելու և արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու միջոց է։*

*4. Արմատավորենք ընկ. ընկ. Ժանդարովայի և Ագաֆոնովայի աշխատանքի մեթոդները, սոցիալիստական մրցություն ծավալենք արտադրական յուրաքանչյուր օպերացիա գերազանց որակով կատարելու համար։*

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ա. ԺԱՆԴԱՐՈՎԱ, Օ. ԱԳԱՖՈՆՈՎԱ: Ավելի շատ գերազանց որակի արտադրանքի համար: *«Ագիտատորի բլոկնոտ» № 23, 1951 թ.։*

Արդյունաբերության աշխատանքի որակի ցուցանիշը: *«Պրավդա»-ի 1951 թ. դեկտեմբերի 11-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի դեկտեմբերի 12-ի համարում։*

## III. ՄՏ ԿԱՅԱՆՆԵՐԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՎՃՌՈՂ ՈՒԺՆ ԵՆ

*1. ՄՏ կայանը կոլտնտեսային արտադրության բոլոր բնագավառների հետագա բարձրացման հզոր լծակն է։*

*2. Բերքատվության բարձրացումը սպասարկվող կոլտնտեսություններում, գյուղատնտեսական արտադրության աշխատատար պրոցեսների մեքենայացումը*

Նաև Մերձավոր ու Միջին Արևելքի մյուս երկրների ներգրավումը Ատլանտյան բլոկի ռազմական միջոցառումների մեջ, որոնք ուղղված են Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների դեմ»։

ԱՄՆ-ի, Մեծ Բրիտանիայի, Ֆրանսիայի և Թյուրքիայի կառավարություններին ուղղված նոյեմբերի 24-ի նոտայում, Սովետական Կառավարությունը բացահայտելով այսպես կոչված դաշնակցային միջին-արևելյան հրամանատարություն ստեղծելու ագրեսիվ դիտավորությունները, հայտարարեց. «ՍՍՌՄ Կառավարությունն անհրաժեշտ է գտնում ԱՄՆ-ի Կառավարության ուշադրությունը հրավիրելու այն բանի վրա, որ ինքը չի կարող անտեսել այդ նոր ագրեսիվ պլանները, որ արտահայտվում են Սովետական Միության սահմաններից ոչ հեռու գտնվող շրջանում միջին-արևելյան հրամանատարություն ստեղծելու մեջ։ Սովետական Կառավարությունը նաև անհրաժեշտ է գտնում հայտարարելու, որ այն դրության համար, որ կարող է ծագել դրա հետևանքով, պատասխանատվությունը կընկնի ԱՄՆ-ի Կառավարության վրա և հիշյալ հրամանատարության ստեղծման մյուս նախաձեռնողների վրա»։

---



# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Ի. Վ. ՍՏԱԼԻՆԸ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՄԵԾ ԱՌԱՋՆՈՐԴԸ ԵՎ ՈՒՍՈՒՑԻՉՆ Է

1. Ի. Վ. Ստալինը Վ. Ի. Լենինի մերձավոր զինակիցն է, նրա գործի մեծ շարունակողը։

2. Ի. Վ. Ստալինը ՍՍՌՄ-ում սոցիալիզմի հաղթանակի և կոմունիզմի կառուցման ոգեշնչողն ու կազմակերպիչն է։

3. Ի. Վ. Ստալինը բոլոր ժամանակների մեծագույն զորավարն է, Եվրոպայի և ամբողջ աշխարհի ժողովուրդներին ֆաշիստական ստրկացումից փրկողը։

4. Ի. Վ. Ստալինը ամբողջ աշխատավոր մարդկության առաջնորդը և ուսուցիչն է, հանուն խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի մղվող պայքարում։

5. Ուսումնասիրենք լենինյան-ստալինյան ուսմունքը, Լենինի և Ստալինի կենսագրությունները։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ընկեր Ստալինին — մեծ առաջնորդին և ուսուցչին, Լենինի անմահ գործի շարունակողին: *«Պարտիական կյանք» № 12, 1949 թ., «Ս. Հ.» 1949 թ. դեկտեմբերի 21:*

Կոմունիստական պարտիայի և սովետական ժողովրդի մեծ առաջնորդը և ուսուցիչը: *«Ս. Հ.» 1949 թ. դեկտեմբերի 16:*

Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալին: *Համառոտ կենսագրություն:*

## II. ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆ ԾԱՎԱԼԵՆՔ ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՕՊԵՐԱՑԻԱ ԳԵՐԱԶԱՆՑ ՈՐԱԿՈՎ ԿԱՏԱՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ

*1. Ընկ. ընկ. Ա. Ժանդարովայի և Օ. Ագաֆոնովայի առաջարկությունը՝ արտադրական յուրաքանչյուր օպերացիա գերազանց որակով կատարելու համար սոցիալիստական մրցություն ծավալելու վերաբերյալ՝ յուրաքանչյուր ձեռնարկության աշխատանքի որակական ցուցանիշների հետագա բարելավման ուղին է հանդիսանում:*

*2. Արտադրական յուրաքանչյուր օպերացիա գերազանց որակով կատարելը՝ աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման և պլանը ժամկետից շուտ կատարելու գրավականն է:*



*3. Արտադրական յուրաքանչյուր օպերացիա գերազանց որակով կատարելը՝ խոտանը պակասեցնելու և արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու միջոց է:*

*4. Արմատավորենք ընկ. ընկ. Ժանդարովայի և Ագաֆոնովայի աշխատանքի մեթոդները, սոցիալիստական մրցություն ծավալենք արտադրական յուրաքանչյուր օպերացիա գերազանց որակով կատարելու համար:*

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ա. ԺԱՆԴԱՐՈՎԱ, Օ. ԱԳԱՖՈՆՈՎԱ: Ավելի շատ գերազանց որակի արտադրանքի համար: *«Ագիտատորի բլոկնոտ» № 23, 1951 թ.:*

Արդյունաբերության աշխատանքի որակի ցուցանիշը: *«Պրավդա»-ի 1951 թ. դեկտեմբերի 11-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի դեկտեմբերի 12-ի համարում:*

## III. ՄՏ ԿԱՅԱՆՆԵՐԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՎՃՌՈՂ ՈՒԺՆ ԵՆ

*1. ՄՏ կայանը կոլտնտեսային արտադրության բոլոր բնագավառների հետագա բարձրացման հզոր լծակն է:*

*2. Բերքատվության բարձրացումը ապահովվող կոլտնտեսություններում, գյուղատնտեսական արտադրության աշխատատար պրոցեսների մեքենայացումը*

ՄՏ կայանների աշխատողների կարևորագույն խնդիրն է։

3. ՄՏ կայանի և կոլտնտեսության միջև կնքված պայմանագիրը՝ օրենք է ինչպես ՄՏ կայանի, այնպես և կոլտնտեսության համար։

4. Տրակտորների և մյուս մեքենաների ձմեռային նորոգման օրինակելի կազմակերպումը՝ գարնան դաշտային աշխատանքների հաջող կատարման գրավականն է։

5. Ավելի լայնորեն ծավալենք սոցիալիստական մրցությունը ՄՏ կայանների բոլոր աշխատողների մեջ՝ գյուղատնտեսության բնագավառում 1952 թվականին նորանոր հաջողությունների հասնելու համար։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Հետպատերազմյան շրջանում գյուղատնտեսության բարձրացման միջոցառումների մասին։ ՀամԿ(բ)Պ Կենտկոմի պլենումի որոշումը՝ ընդունված ընկ. Ա. Անդրեևի զեկուցման առթիվ, 5-րդ գլուխ։

---

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Դարձյալ սոցիալ դեմոկրատական թեքման մասին մեր պարտիայի մեջ։ 162 էջ, գինը 1 ռ. 70 կոպ.։

Վ. ԳԱԲՈՆԻՍ.— ՌԿ(բ)Պ տասներկուերորդ համագումարը։ 156 էջ, գինը 2 ռ.։

ՇԻՐՎԱՆԶԱԴԵ.— Երկերի լիակատար ժողովածու։ Հատոր 8-րդ, 496 էջ, գինը 13 ռ. 80 կոպ.։

ՎԱԽՏԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ.— Սևանի ափին։ 358 էջ, գինը 16 ռ. 65 կոպ.։

Տ. ՍՅՈՄՈՒՇԿԻՆ.— Ալիտետը նեռանում է լեռները։ Գինը 10 ռ.։

Գ. ԵՂԻԱԶԱՐՅԱՆ.— Ժողովրդական դատարանները սովետական օրինականության համար մղվող պայքարում։ 19 էջ, գինը 25 կոպ.։

Կ. Պ. ԳՈՐՇԵՆԻՆ.— Սովետական դատարանը։ 109 էջ, գինը 1 ռ. 40 կոպ.։

---

Պատ. խմբագրի տեղակալ՝
Տ. ՎԱՐԺԱՊԵՏՅԱՆ

## ԸՆԿԵՐ ԱԳԻՏԱՏՈ՛Ր.

Խնդրում ենք ուղարկել ձեր կարծիքը «Ագիտատորի բլոկնոտ»-ում տպագրված նյութերի մասին: Արդյոք այդ նյութերը բավարարում են ձեզ՝ իրենց բովանդակությամբ և ձևով: Օգնո՞ւմ են ձեզ ագիտացիոն-մասսայական աշխատանքում:

Գրեցեք նաև, թե ի՞նչպիսի զրույցներ և հոդվածներ կցանկանայիք կարդալ «Ագիտատորի բլոկնոտ»-ի էջերում: Ի՞նչպիսի հարցերի պատասխաններ, տեղեկատու նյութեր կցանկանայիք, որ զետեղվեն «Ագիտատորի բլոկնոտ»-ում:

ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 24 1951 г.

ՎՖ 06076 Պատվեր № 1097 Տիրաժ 9150, գինը 50 կ.

Հայպոլիգրաֆհրատի II տպարան, Երևան,
Կնունյանցի փ. № 8, 1951 թ.